Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2 (9)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
...Ս.Ն.—1937

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 2 (9)



ՀԿ(բ)Կ Կենտկոմի հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Մուրյան և Մ. Գևորգյան
Հրատարակություն № 5, պատվեր № 114
Գլավլիտի լիազոր № 2249
Տիրաժ՝ 10.177
Պետհրատի տպարան. Յերևան


Ի. ՍՏԱԼԻՆ

# ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

## ԼԵՆԻՆՆ ԻԲՐԵՎ ՌԿԿ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ ՅԵՎ ԱՌԱՋՆՈՐԴ

**Հոդված Լենինի ծննդյան 50-ամյակի առթիվ**

*Մարքսիստների յերկու խումբ գոյություն ունի: Դրանք յերկուսն էլ աշխատում են մարքսիզմի դրոշի տակ, իրենց համարում են «իսկական» մարքսիստական: Յեվ այնուամենայնիվ դրանք ամենևին էլ նույնը չեն: Ավելին. դրանց միջև մի ամբողջ անդունդ կա, վորովհետև դրանց աշխատանքի մեթոդները տրամագծորեն հակառակ են:*

*Առաջին խումբը սովորաբար սահմանափակվում է մարքսիզմի արտաքնապես ընդունելով, այն հանդիսավորապես հռչա-*

կելով: Զկարողանալով կամ չցանկանալով թափանցել մարքսիզմի էության մեջ, չկարողանալով կամ չցանկանալով կենսագործել այն, այդ խումբը մարքսիզմի կենդանի ու հեղափոխական դրույթները դարձնում է մեռած, ոչինչ չասող ֆորմուլաներ: Նա իր գործունեությունը հիմնում է ո՛չ թե փորձի, ո՛չ թե գործնական աշխատանքի հաշվառման վրա, այլ Մարքսից բերած ցիտատների վրա: Նա ցուցումներ և դիրեկտիվներ քաղում է ո՛չ թե կենդանի իրականության վերլուծումից, այլ անալոգիաներից և պատմական զուգահեռներից: Խոսքի ու գործի իրար չընելը—այս է այդ խմբի հիմնական հիվանդությունը: Այստեղից՝ հուսախաբություններ և հավիտենական դժգոհություն բախտից, որը միշտ ու ամենուրեք խաբում է նրան, «քթին տալիս»: Այդ խմբի անունն է՝ մենշևիզմ (Ռուսաստանում), օպորտունիզմ (Եվրոպայում): Ընկ. Տիշկոն (Յոգիխես) Լոնդոնի համագումարում բավականին դիպուկ բնորոշեց այդ խումբը՝ ասելով, թե նա ո՛չ թե կանգնած, այլ պառկած է մարքսիզմի տեսակետին:

Երկրորդ խումբը, ընդհակառակը, հար-



ցի ծանրության կենտրոնը մարքսիզմի արտաքնապես ընդունումից փոխադրում է նրա կիրառման, նրա կենսագործման վրա: Մարքսիզմի իրականացման ճանապարհի ուղիներ և միջոցներ նշել, որոնք համապատասխանում են իրադրությանը, այդ ուղիներն ու միջոցները փոփոխել, երբ իրադրությունը փոխվում է,—ահա թե ինչի վրա յե գլխավորապես այդ խումբը դարձնում իր ուշադրությունը: Այդ խումբը դիրեկտիվներ ու ցուցումներ քաղում է ո՛չ թե պատմական անալոգիաներից և զուգահեռներից, այլ շրջապատող պայմանների ուսումնասիրությունից: Իր գործունեության մեջ նա հենվում է ո՛չ թե ցիտատների ու ասույթների վրա, այլ գործնական փորձի վրա, իր յուրաքանչյուր քայլն ստուգելով փորձով, իր սխալներից դաս առնելով և ուրիշներին նոր կյանք կառուցել սովորեցնելով: Իսկապես սրանով է հենց բացատրվում, որ այդ խմբի գործունեության մեջ խոսքն ու գործը իրար բռնում են, և Մարքսի ուսմունքը լիովին պահպանում է իր կենդանի հեղափոխական ուժը: Այս խմբին լիովին հարմարվում են Մարքսի այն խոսքե-

րը, վորոնց համաձայն մարքսիստները չեն կարող բավականանալ աշխարհը բացատրելով, այլ նրանք պետք է ե՛լ ավելի առաջ գնան, վորպեսզի փոխեն այն: Այդ խմբի անունն է՝ բոլշևիզմ, կոմունիզմ:

Այդ խմբի կազմակերպիչն ու առաջնորդը Վ. Ի. Լենինն է:

## 1. ԼԵՆԻՆՆ ԻԲՐԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Պրոլետարական կուսակցության կազմակերպումը Ռուսաստանում ընթացել է հատուկ պայմաններում, վորոնք տարբեր են Արևմուտքում բանվորական կուսակցության կազմակերպվելու մոմենտի պայմաններից: Մինչդեռ Արևմուտքում՝ Ֆրանսիայում Գերմանիայում, բանվորական կուսակցությունը դուրս յեկավ արհեստակցական միություններից՝ միությունների և կուսակցությունների լեգալ գոյության պայմաններում, բուրժուական հեղափոխությունը հաջորդող իրադրության մեջ, բուրժուական պառլամենտի առկայության դեպքում, յերբ իշխանության հասած բուր-



ժուազիան կանգնած եր պրոլետարիատի դեմ-հանդիման, — Ռուսաստանում, ընդհակառակը, պրոլետարական կուսակցության կազմակերպումը տեղի յեր ունենում ամենադաժան աբսոլյուտիզմի օրով, բուրժուա-դեմոկրատական հեղափոխության սպասումի պայմաններում, յերբ, մի կողմից, կուսակցական կազմակերպությունները լցվում եյին բանվոր դասակարգը բուրժուական հեղափոխության համար օգտագործելու ցանկությամբ տարված բուրժուական «լեգալ-մարքսիստական» տարրերով, մյուս կողմից կուսակցական լավագույն աշխատողներին ցարական ժանդարմերիան դուրս եր խլում կուսակցության շարքերից, այնինչ տարերային հեղափոխական շարժման աճումը պահանջում եր հեղափոխականների այնպիսի կայուն, միախմբված ու բավականաչափ կոնսպիրատիվ մարտական միջուկի առկայություն, վորը կարողանար շարժումն ուղղել դեպի աբսոլյուտիզմի տապալումը:

Խնդիրն այն եր, վոր վոչխարները ջոկենք այծերից, սահմանազատվենք օտար տարրերից, տեղերում փորձառու հեղափոխականների կադրեր կազմակերպենք, նը-

րանց պարզ ծրագիր ու ամուր տակտիկա տային, վերջապես, այդ կադրերը համախմբեին պրոֆեսիոնալ հեղափոխականների մի միասնական մարտական կազմակերպության մեջ, որը լիներ բավականաչափ կոնսպիրատիվ՝ ժանդարմական հարձակումներին դիմանալու համար, բայց միաժամանակ մասսաների հետ բավականաչափ կապված լիներ՝ հարկավոր րոպեին նրանց կռվի տանելու համար:

Մենշևիկները, հենց նրանք, որ մարքսիզմի տեսակետին են «պառկած», հարցը հասարակ կերպով եյին լուծում, որովհետև Արևմուտքում բանվորական կուսակցությունը ծնվել է անկուսակցական արհեստակցական միություններից, որոնք պայքարում են բանվոր դասակարգի տնտեսական դրությունը բարելավելու համար, ապա Ռուսաստանում, ըստ հնարավորության, պետք է նույնը կատարել, այսինքն՝ առայժմ սահմանափակվել տեղերում «բանվորների տնտեսական պայքարով՝ գործատերերի և կառավարության դեմ», չստեղծելով ընդհանուր ռուսական մարտական կազմակերպություն, իսկ հետո... հետո, յեթե մինչ այդ հրապարակ



չեն գա արհեստակցական միություններ, անկուսակցական բանվորական համագումար հրավիրել և այն կուսակցություն հայտարարել:

Այն մասին, որ մենշևիկների՝ ռուսական պայմանների համար ուտոպիստական այդ «մարքսիստական» «պլանն», այնուամենայնիվ, յենթադրում է ագիտացիոն լայն աշխատանք, որն ուղղված է կուսակցականության գաղափարի նվաստացմանը, կուսակցական կադրերի ոչնչացմանը, պրոլետարիատն առանց իր կուսակցության թողնելուն և բանվոր դասակարգը լիբերալների ճանկը գցելուն,—այդ մասին դժվար թե այն ժամանակ գլխի եյին ընկնում մենշևիկները և, թերևս, բոլշևիկներից շատերն ել:

Լենինի մեծագույն ծառայությունը ռուսական պրոլետարիատի և նրա կուսակցության հանդեպ այն է, որ նա մենշևիկյան կազմակերպական «պլանի» ամբողջ վտանգավորությունը մերկացրեց դեռևս այն մոմենտին, յերբ «պլանը» հազիվ եր հղացված, յերբ «պլանի» հեղինակներն իրենք դժվարությամբ եյին պարզ պատկերացնում նրա ուրվագծերը, և մերկացնե-

լով այն, Զատաղի հարձակում սկսեց մենշևիկների կազմակերպական սանձարձակության դեմ, պրակտիկների ամբողջ ուշադրությունը կենտրոնացնելով այդ հարցի վրա: Վորովհետև խոսքը կուսակցության գոյության մասին եր, կուսակցության կյանքի և մահվան մասին:

Ընդհանուր-ռուսական քաղաքական թերթ հիմնել, իբրև կուսակցական ուժերի համախմբման կենտրոն, տեղերում կուսակցական կայուն կադրեր կազմակերպել, իբրև կուսակցության «կանոնավոր մասեր», այդ կադրերը թերթի միջոցով ի մի հավաքել և նրանց միախմբել իբրև ընդհանուր-ռուսական մարտական կուսակցություն՝ խստիվ նշված սահմաններով, պարզ ծրագրով, ամուր տակտիկայով, միասնական կամքով,—ահա թե ինչ պլան զարգացրեց Լենինը իր «Ի՞նչ անել», «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» նշանավոր գրքույկներում: Այդ պլանի արժանիքն այն եր, վոր նա լիովին համապատասխանում եր ռուսական իրականությանը և վարպետորեն ընդհանրացնում եր լավագույն պրակտիկների կազմակերպական փորձը: Այդ պլանի համար մղված պայքարում ռու-



սական պրակտիկների մեծամասնությունը վճռականորեն գնաց Լենինի հետևից, կանգ չառնելով պառակտման առջև: Այդ պլանի հաղթությունը հիմք դրեց այն միաձույլ ու կոփված Կոմունիստական Կուսակցության, վորի հավասարը աշխարհը չի ճանաչում:

Մեր ընկերները (վոչ միայն մենշևիկները) հաճախ մեղադրում եյին Լենինին, վոր նա չափազանց մեծ հակում ունի դեպի բանավեճն ու պառակտումը, վոր նա անհաշտ պայքար է մղում հաշտվողականների դեմ և այլն: Անկասկած թե՛ այս և թե՛ այն տեղի ուներ իր ժամանակին: Բայց դժվար չե հասկանալ, վոր մեր կուսակցությունը չեր կարողանա ազատվել ներքին թուլությունից և ցրվածությունից, նա չեր կարողանա իրեն հատուկ ուժին և ամրությանը հասնել, յեթե իր միջից չվտարեր վոչ-պրոլետարական, ոպորտունիստական տարրերին: Բուրժուական տիրապետության դարաշրջանում պրոլետարական կուսակցությունը կարող է աճել և ամրապնդվել միմիայն այն չափով, ինչ չափով վոր նա իր միջավայրում և բանվոր դասակարգի մեջ պայքար է մղ-

կած օպորտունիստական, հակահեղափոխական և հակակուսակցական տարրերի դեմ: Լասսալն արդարացի յեր, ասելով՝ «կուսակցությունը նրանով ե ամրապնդվում, վոր մաքրում ե իրեն»: Մեղադրողները սովորաբար վկայակոչում եյին գերմանական կուսակցությունը, վորտեղ այն ժամանակ ծաղկած եր «միասնությունը»: Բայց, նախ, ամեն միասնություն ել ուժի նշան չե, յերկրորդ, բավական ե այժմ նայել յերեք կուսակցության բաժանված՝ նախկին գերմանական կուսակցությանը, վորպեսզի հասկանանք Շայդեմանի ու Նոսկեյի՝ Լիբկնեխտի ու Լուքսեմբուրգի հետ ունեցած «միասնության» ամբողջ կեղծությունն ու յերևակայականությունը: Յեվ, ո՞վ գիտե, գերմանական պրոլետարիատի համար արդյոք ավելի լավ չե՞ր լինի, յեթե գերմանական կուսակցության հեղափոխական տարրերն իր ժամանակին պառակտվեյին նրա հակահեղափոխական տարրերից... Վո՛չ, Լենինը հազար անգամ իրավացի յեր, կուսակցությունը տանելով հակակուսակցական և հակահեղափոխական տարրերի դեմ անհաշտ պայքարի ուղիով: Վորովհետև մեր կուսակցությունը մի-



միայն այդպիսի կազմակերպական քաղաքականության հետևանքով կարող եր իր մեջ ստեղծել այն ներքին միասնականությունն ու զարմանալի միաձուլությունը, վորոնց շնորհիվ նա Կերենսկու ժամանակ անհիվանդագին դուրս յեկավ հուլիսյան ճգնաժամից, իր ուսերին տարավ Հոկտեմբերյան ապստամբությունը, առանց ցնցումների ապրեց Բրեստի ժամանակաշրջանի ճգնաժամը, կազմակերպեց հաղթանակը Անտանտի դեմ և, վերջապես, հասավ այն չտեսնված ճկունության, վորի շնորհիվ նա ի վիճակի յե ուզած մոմենտին վերակազմել իր շարքերը և իր անդամներից հարյուր հազարավորներին կենտրոնացնել ցանկացած մեծ աշխատանքի շուրջը, առանց շփոթություն մտցնելու իր շարքերի մեջ:

## 2. ԼԵՆԻՆԸ ԻԲՐԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋՆՈՐԴ

Բայց Ռուսաստանի Կոմունիստական Կուսակցության կազմակերպական արժանիքները գործի մի կողմն են միայն: Կուսակ-

ցությունը չէր կարողանա այնպես արագ աճել ու ամրապնդվել, յեթե նրա աշխատանքի քաղաքական բովանդակությունը, նրա ծրագիրն ու տակտիկան չհամապատասխանեյին ռուսական իրականությանը, յեթե նրա լոզունգները չվառեյին բանվորական մասսաներին և առաջ չմղեյին հեղափոխական շարժումը: Այժմ կանցնենք գործի այդ կողմին:

Ռուսական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունն (1905 թ.) ընթանում եր այնպիսի պայմաններում, վորոնք տարբեր եյին Արեվմուտքի հեղափոխական հեղաշրջումների ժամանակի պայմաններից, որինակ, Ֆրանսիայում և Գերմանիայում: Մինչդեռ Արեվմուտքում հեղափոխությունը կատարվեց մանուֆակտուրային ժամանակաշրջանի և դասակարգային անզարգացած պայքարի պայմաններում, յերբ պրոլետարիատը թույլ և փոքրաթիվ եր, չուներ իր սեփական կուսակցությունը, վորը կարողանար ձևակերպել նրա պահանջները, իսկ բուրժուազիան բավականաչափ հեղափոխական եր, վորպեսզի բանվորներին ու գյուղացիներին վստահություն ներշնչեր դեպի ինքը և նրանց դուրս բերեր արիս-



տոկրատիայի դեմ պայքարելու,— Ռուսաստանում, ընդհակառակը, հեղափոխությունն սկսվեց (1905 թ.) մեքենայի ժամանակաշրջանի և զարգացած դասակարգային պայքարի պայմաններում, յերբ համեմատաբար մեծաթիվ և կապիտալիզմի կողմից միախմբված ռուսական պրոլետարիատն արդեն բուրժուազիայի դեմ մղած մի շարք մարտեր ուներ, ուներ իր կուսակցությունը՝ ավելի միախմբված, քան բուրժուազիան, ուներ իր դասակարգային պահանջները, իսկ ռուսական բուրժուազիան, վոր բացի այդ, ապրում եր կառավարության տված պատվերներով, պրոլետարիատի հեղափոխականությունից բավականաչափ վախեցած եր, վորպեսզի դաշինք վորոներ կառավարության ու կալվածատերերի հետ՝ բանվորների ու գյուղացիների դեմ: Այն փաստը, վոր ռուսական հեղափոխությունը բռնկեց Մանջուրիայի դաշտերում ունեցած ռազմական անհաջողությունների հետևանքով,—այդ փաստը միայն արագացրեց դեպքերը, վոչինչ, սակայն, չփոխելով գործի եյության մեջ:

Իրադրությունը պահանջում եր, վոր պրոլետարիատը հեղափոխության գլուխ

կանգնի, իր շուրջը համախմբի հեղափոխական գյուղացիությանը և վճռական պայքար մղի ցարիզմի և բուրժուազիայի դեմ միաժամանակ, հանուն յերկրի լիակատար դեմոկրատացման և իր դասակարգային շահերի ապահովման:

Բայց մենշևիկները, հենց նրանք, վոր «պառկած են» մարքսիզմի տեսակետին, հարցն իրենց ձևով լուծեցին—վորովհետև ռուսական հեղափոխությունը բուրժուական է, իսկ բուրժուական հեղափոխությունների մեջ ղեկավարում են բուրժուազիայի ներկայացուցիչները (տե՛ս Փրանսիական և գերմանական հեղափոխությունների «պատմությունը»), ապա պրոլետարիատը չի կարող լինել ռուսական հեղափոխության հեգեմոնը, ղեկավարությունը պետք է թողնվի ռուսական բուրժուազիային (հենց այն բուրժուազիային, վորը դավաճանում է հեղափոխությանը), գյուղացիությունը նույնպես պետք է հանձնվի բուրժուազիայի խնամքին, իսկ պրոլետարիատը պետք է մնա ծայրահեղ ձախ ոպոզիցիայի դրության մեջ:

Ցավ մենշևիկները վատթար լիբերալների այդ գզվելի կրկներգները ներկայացնում ե-



յին իբրև «իսկակա՛ն» մարքսիզմի վերջին խոսք:

Լենինի մեծագույն ծառայությունը ռուսական հեղափոխության առջև այն է, վոր նա մինչև արմատները մերկացրեց մենշևիկների պատմական զուգահեռների դատարկությունը և մենշևիկյան «հեղափոխության սխեմայի» ամբողջ վտանգավորությունը, սխեմայի, վորը բանվորական գործը բուրժուազիայի ճանկն եր գցում: Պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրա՝ բուրժուազիայի դիկտատուրայի փոխարեն, Բուլիգինյան Դումայի բոյկոտ և զինված ապստամբություն՝ Դումային մասնակցելու և նրա մեջ որգանական աշխատանքի փոխարեն, «ձախ բլոկի» գաղափար, յերբ Դուման այնուամենայնիվ գլուխ յեկավ, և Դումայի ամբիոնի ոգտագործում արտադումայական պայքարի համար՝ կադետական մինիստրության և Դումայի ռեակցիոն «պահպանման» փոխարեն, կադետական կուսակցության, իբրև հակահեղափոխական ուժի դեմ պայքար՝ նրա հետ բլոկ կազմելու փոխարեն,—ահա ինչպիսի տակտիկական պլան զարգացրեց Լենինն իր

«Երկու տակտիկա», «Կադետների հաղթությունը» նշանավոր բրոշյուրների մեջ:

Այդ պլանի արժանիքն այն էր, որ նա, Ռուսաստանում. բուրժուա-դեմոկրատական հեղափոխության դարաշրջանում պրոլետարիատի դասակարգային պահանջներն ուղղակի և վճռականապես ձևակերպելով՝ հեշտացնում էր անցումը դեպի սոցիալիստական հեղափոխություն, իր մեջ սաղմնային վիճակում կրում էր պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը: Այդ տակտիկական պլանի համար մղած պայքարում ռուսական պրակտիկների մեծամասնությունը վճռականորեն և անդարձ գնաց Լենինի հետևից: Այդ պլանի հաղթությունը դրեց այն հեղափոխական տակտիկայի հիմքը, որի շնորհիվ մեր կուսակցությունն այժմ ցնցում է համաշխարհային իմպերիալիզմի հիմունքները:

Դեպքերի հետագա զարգացումը, քառամյա իմպերիալիստական պատերազմը և ժողովրդական ամբողջ տնտեսության խարխլումը, Փետրվարյան հեղափոխությունը և հայտնի յերկիշխանությունը, ժամանակավոր Կառավարությունն իբրև բուրժուական հակահեղափոխության օջախ



և Պետերբուրգի խորհուրդն իբրև սաղմնավորվող պրոլետարական դիկտատուրայի ձև, Հոկտեմբերյան հեղաշրջումը և սահմանադրի ցրումը, բուրժուական պառլամենտարիզմի վերացումը և Խորհուրդների հանրապետության հռչակումը, իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելը և համաշխարհային իմպերիալիզմի յելույթը՝ խոսքով «մարքսիստների» հետ մեկտեղ, պրոլետարական հեղափոխության դեմ, վերջապես, սահմանադրին կառչած մենշևիկների խղճալի դրությունը, որոնց պրոլետարիատը դեն էր շպրտել նավից և հեղափոխության ալիքը կապիտալիզմի ափը հանել,—այդ բոլորը միայն հաստատում էր «Երկու տակտիկայի» մեջ Լենինի ձևակերպած հեղափոխական տակտիկայի հիմունքների ճշտությունը: Այն կուսակցությունը, որ ձեռքին այդպիսի ժառանգություն ուներ, կարող էր համարձակ առաջ լողալ, չվախենալով ստորջրյա քարերից:

Պրոլետարական հեղափոխության մեր ժամանակը, յերբ կուսակցության յուրաքանչյուր լոզունգ և առաջնորդի յուրաքանչյուր Փրազ գործով է ստուգվում,

պրոլետարիատն իր առաջնորդներին հատուկ պահանջներ է ներկայացնում: Պատմությունը ճանաչում է պրոլետարական առաջնորդներ, փոթորկոտ ժամանակի առաջնորդներ, պրակտիկ առաջնորդներ, անձնազոհ ու խիզախ, բայց թեորիայում թույլ: Մասսաները շուտով չեն մոռանում այդպիսի առաջնորդների անունները: Այդպիսիք են, օրինակ, Լասսալը Գերմանիայում, Բլանկին Ֆրանսիայում: Բայց շարժումն ամբողջությամբ չի կարող միմիայն հիշողություններով ապրել. Նրան հարկավոր են պարզ նպատակ (ծրագիր), ամուր գիծ (տակտիկա):

Ուրիշ տեսակի առաջնորդներ էլ կան, խաղաղ ժամանակի առաջնորդներ, թեորիայում ուժեղ, բայց կազմակերպության և պրակտիկ աշխատանքի գործերում՝ թույլ: Այդպիսի առաջնորդները ժողովրդական են միմիայն պրոլետարիատի վերին խավում, և այն էլ միայն մինչև որոշ ժամանակ. Հեղափոխական դարաշրջանը հասնելուն պես, երբ առաջնորդներից հեղափոխական-պրակտիկ լոզունգներ են պահանջվում, թեորետիկներն իջնում են բեմից՝ տեղը զիջելով նոր մարդկանց: Այդպիսիք են, օրինակ, Պլեխանովը Ռուսաստանում, Կաուցկին Գերմանիայում:



Պրոլետարական հեղափոխության և պրոլետարական կուսակցության առաջնորդի պոստում դիմանալու համար անհրաժեշտ է իր մեջ զուգակցել թեորիական ուժը և պրոլետարական շարժման պրակտիկ-կազմակերպական փորձը: Պ. Աքսելրոդը, երբ մարքսիստ էր, Լենինի մասին գրում էր, որ նա «իր մեջ բախտավոր կերպով միացնում է լավ պրակտիկի փորձը թեորիական կրթության ու քաղաքական լայն մտահորիզոնի հետ» (տե՛ս Պ. Աքսելրոդի առաջաբանը Լենինի «Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները» բրոշյուրին): Թե այժմ ընկ. Լենինի մասին ինչ կասեր «կուլտուրական» կապիտալիզմի իդեոլոգ Պ. Աքսելրոդը,— դժվար չէ գլխի ընկնել: Բայց մեզ համար, որ Լենինին մոտիկից ենք ճանաչում և կարող ենք գործին օբյեկտիվորեն նայել, անտարակուսելի յե, որ Լենինի մեջ այդ հին հատկությունը լիովին պահպանվել է: Այդ բանում, ի միջիայլոց, պետք է փնտռել այն փաստի բացատրությունը, որ Լենինը, հենց նա յե, որ այժմ հանդիսանում է աշխարհում ամենից ուժեղ և ամենից կոփված պրոլետարական կուսակցության առաջնորդը:

«Правда» № 86, 23 ապրիլի 1920 թ.

# ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ ԱՌԹԻՎ

**Ճառ՝ խորհուրդների համամիութենական II համագումարում 1924 թ. հունվարի 26-ին**

*Ընկերնե՛ր: Մենք, կոմունիստներս, հատուկ խառնվածքի մարդիկ ենք: Մենք հատուկ կտորից ենք ձևված: Մենք նրանք ենք, որոնք պրոլետարական մեծ ստրատեգի բանակը, ընկ. Լենինի բանակն ենք կազմում: Չկա ավելի բարձր բան, քան այդ բանակին պատկանելու պատիվը: Չկա ավելի բարձր բան, քան այն կուսակցության անդամի կոչումը, որի հիմնադիրն ու ղեկավարը ընկ. Լենինն է: Ամեն մեկին վիճակված չէ այդպիսի կուսակցության անդամ լինել: Ամեն մեկին վիճակված չէ այդպիսի կուսակցության անդամության հետ կապված ծանրությունների ու փոթորիկներին դիմանալ: Բանվոր դասակարգի զավակները, կարիքի ու պայքարի զավակները, աներևա-*



*կայելի զրկանքների ու հերոսական ջանքերի զավակները—ահա թե ովքեր ամենից առաջ պետք է լինեն այդպիսի կուսակցության անդամները: Ահա թե ինչու լենինյանների կուսակցությունը, կոմունիստների կուսակցությունը դրա հետ մեկտեղ կոչվում է բանվոր դասակարգի կուսակցություն:*

Հեռանալով մեզնից՝ ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց—բարձր պահել յեվ մաքուր պահպանել կուսակցության անդամի մեծ կոչումը: Յերդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, վոր մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը:

*Ընկեր Լենինը 25 տարի կոփել է մեր կուսակցությունը և նրանից դարբնել է ամենաամուր և ամենակոփված բանվորական կուսակցությունն աշխարհում: Ցարիզմի և նրա ոպրիչնիկների հարվածները, բուրժուազիայի ու կալվածատերերի կատաղությունը, Կոլչակի ու Դենիկինի զինված հարձակումները, Անգլիայի ու Ֆրանսիայի զինված միջամտությունը, բուրժուական հարյուրաբերան մամուլի սուտն ու զրպարտությունը,— այդ բոլոր կարիճները քա-*

ռորդ դարի ընթացքում անփոփոխ կերպով թափվում եյին մեր կուսակցության գլխին: Բայց մեր կուսակցությունը կանգնած եր ժայռի պես, հետ մղելով թշնամիների անհամար հարվածները և բանվոր դասակարգին տանելով առաջ, դեպի հաղթանակ: Դաժան մարտերի մեջ կոփեց մեր կուսակցությունն իր շարքերի միասնությունն ու միաձուլությունը: Միասնությամբ ու միաձուլությամբ նա հաղթանակ ձեռք բերեց բանվոր դասակարգի թշնամիների դեմ:

Հեռանալով մեզնից՝ ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց—աչքի լույսի պես պահպանել մեր կուսակցության միասնությունը: Յերդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանն յեվս:

Ծանր ու անտանելի ե բանվոր դասակարգի վիճակը: Տանջալի ու ծանր են աշխատավորների տառապանքները: Ստրուկներ և ստրկատերեր, ճորտեր և ճորտատերեր, գյուղացիներ և կալվածատերեր, բանվորներ և կապիտալիստներ, կեղեքվողներ և կեղեքիչներ,— այդպես եր կա-



ռուցվում աշխարհը դարերից ի վեր, այդպիսին նա մնում ե և այժմ յերկրների ահագին մեծամասնության մեջ: Աշխատավորները դարերի ընթացքում տասնյակ ու հարյուրավոր անգամներ փորձել են իրենց ուսերից վայր գցել կեղեքիչներին և իրենց դրության տերը դառնալ: Բայց յուրաքանչյուր անգամ, ջախջախված ու անարգված, նրանք հարկադրված են յեղել նահանջել, սրտի խորքում պահելով վիրավորանքն ու նվաստացումը, զայրույթն ու հուսահատությունը և հայացքներն ուղղելով անծանոթ յերկնքին, վորտեղ նրանք հույս ունեյին փրկություն գտնել: Ստրկության շղթաները մնում եյին նույնությամբ կամ հին շղթաները փոխարինվում եյին նորերով, վորոնք նույնքան ծանր ու ստորացուցիչ եյին: Միայն մեր յերկրում հաջողվեց աշխատավորների կեղեքված ու վոտնահարված մասսաներին՝ ուսերից վայր նետել կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը և նրա տեղը դնել բանվորների ու գյուղացիների տիրապետությունը: Դուք գիտեք, ընկերնե՛ր, և այժմ ամբողջ աշխարհն ե այդ ընդունում, վոր այդ վիթխարի պայքարը ղեկավարում եր ընկեր Լենինը և նրա կուսակ-

ցությունը: Լենինի մեծությունն ամենից առաջ այն է, որ նա, ստեղծելով Խորհուրդների Հանրապետությունը, հենց դրանով ամբողջ աշխարհի կեղեքված մասսաներին ցույց տվեց, որ կորսված չէ փրկության հույսը, որ կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը մշտնջենական չէ, որ աշխատանքի թագավորությունը կարելի յե ստեղծել հենց աշխատավորների ջանքերով, որ աշխատանքի թագավորությունը պետք է ստեղծել յերկրի վրա, և ոչ թե յերկնքում: Դրանով նա ամբողջ աշխարհի բանվորների ու գյուղացիների սրտերը վառեց ազատության հույսով: Դրանով է հենց բացատրվում այն փաստը, որ Լենինի անունը դարձել է աշխատավոր ու շահագործվող մասսաների ամենասիրելի անունը:

Հեռանալով մեզնից՝ ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց—պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան: Յերդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, որ մենք չենք խնայի մեր ուժերը, որպեսզի պատվով կատարենք քո այդ պատվիրանն յեվս:

Պրոլետարիատի դիկտատուրան մեր յերկրում ստեղծվեց բանվորների ու գյուղա-



ցիների դաշինքի հիման վրա: Դա՝ Խորհուրդների Հանրապետության առաջին և արմատական հիմքն է: Բանվորներն ու գյուղացիները կապիտալիստներին ու կալվածատերերին չեյին կարողանա հաղթել առանց այդպիսի դաշինքի առկայության: Բանվորները չեյին կարողանա ջախջախել կապիտալիստներին առանց գյուղացիների ոժանդակության: Գյուղացիները չեյին կարողանա ջախջախել կալվածատերերին առանց բանվորների կողմից ղեկավարություն ունենալու: Այդ մասին է խոսում քաղաքացիական պատերազմի ամբողջ պատմությունը մեր յերկրում: Բայց Խորհուրդների Հանրապետության ամրապնդման համար մղվող պայքարը բնավ ավարտված չէ,—նա միայն նոր ձև է ընդունել: Բանվորների ու գյուղացիների դաշինքն առաջ ռազմական դաշինքի ձև ուներ, որովհետև այն ուղղված էր Կոլչակի և Դենիկինի դեմ: Այժմ բանվորների ու գյուղացիների դաշինքը պետք է ընդունի տնտեսական աշխատակցության ձև քաղաքի ու գյուղի միջև, բանվորների ու գյուղացիների միջև, որովհետև այդ դաշինքն ուղղված է վաճառականի ու կուլակի դեմ, որովհետև դրա նպատակն է գյուղացիներին ու բան-

*վորներին փոխադարձաբար մատակարարել ամեն անհրաժեշտ բանի: Դուք գիտեք, վոր վոչ վոք այնպես հաստատակամորեն չեր անցկացնում այդ խնդիրը, ինչպես ընկ. Լենինը:*

Հեռանալով մեզնից՝ ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց—բոլոր ուժերով ամրապնդել բանվորների ու գյուղացիների դաշինքը: Յերդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, վոր մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանն յեվս:

*Խորհուրդների Հանրապետության յերկրորդ հիմքը մեր յերկրի ազգությունների աշխատավորների դաշինքն ե: Ռուսները և ուկրաինացիները, բաշկիրները և բելոռուսները, վրացիներն ու ադրբեջանցիները, հայերն ու դաղստանցիները, թաթարներն ու կիրգիզները, ուզբեկներն ու թուրքմենները,—դրանք բոլորը միանման շահագրգռված են, վոր ամրանա պրոլետարիատի դիկտատուրան: Վո՛չ միայն պրոլետարիատի դիկտատուրան ե այդ ժողովուրդներին ազատում շղթաներից ու ճնշումից, այլև այդ ժողովուրդներն են մեր Խորհուրդների Հանրապետությունն ազա-*



*տում բանվոր դասակարգի թշնամիների դավերից ու արտելքներից՝ իրենց անվերապահ նվիրվածությամբ Խորհուրդների Հանրապետությանը, նրա համար զոհելու իրենց պատրաստակամությամբ: Ահա թե ինչու ընկեր Լենինը մեզ անդադար ասում եր, թե անհրաժեշտ ե, վոր մեր յերկրի ժողովուրդները կամավոր դաշինք ունենան, անհրաժեշտ ե, վոր նրանք յեղբայրորեն աշխատակցեն Հանրապետությունների Միության շրջանակներում:*

Հեռանալով մեզնից՝ ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց—ամրացնել ու ընդլայնել Հանրապետությունների Միությունը: Յերդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, վոր մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանն յեվս:

*Պրոլետարիատի դիկտատուրայի յերրորդ հիմքը մեր Կարմիր բանակն ե, մեր Կարմիր նավատորմը: Լենինը մեզ շատ անգամ ե ասել, թե կապիտալիստական պետություններից մեր նվաճած ժամանակավոր դադարը կարող ե կարճատև լինել: Լենինը մեզ շատ անգամ ե մատնանշել, վոր Կարմիր բանակի ամրացումը և նրա դրության*

ղացումը մեր կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկն է: Քերզոնի ուլտիմատումի և Գերմանիայի ճգնաժամի հետ կապված դեպքերն ավելորդ անգամ հաստատեցին, որ Լենինը, ինչպես միշտ, իրավացի էր: Արդ յերդվենք, ընկերնե՛ր, որ մենք ուժերս չենք խնայի, որպեսզի ամրացնենք մեր Կարմիր բանակը, մեր Կարմիր նավատորմը:

Որպես մի հսկա ժայռ կանգնած է մեր յերկիրը՝ շրջապատված բուրժուական պետությունների օվկիանոսով: Ալիքներ ալիքների հետևից գլորվում են նրա վրա, սպառնալով հեղեղել ու խորտակել: Իսկ ժայռը շարունակում է անդրդվելի կանգնած մնալ: Ինչո՞ւմն է նրա ուժը: Ոչ միայն նրանում, որ մեր յերկիրը պահպանվում է բանվորների ու գյուղացիների դաշինքով, որ նա մարմնավորվում է ազատ ազգությունների դաշինքը, որ նրան պաշտպանում է Կարմիր բանակի և Կարմիր նավատորմի հզոր ձեռքը: Մեր յերկրի ուժը, նրա ամրությունը, նրա հաստատունությունը նրանումն է, որ նա խորին համակրանք ու անխորտակելի օժանդակություն ունի ամբողջ աշխարհի բանվորների



ու գյուղացիների սրտերում: Ամբողջ աշխարհի բանվորներն ու գյուղացիները ցանկանում են Խորհուրդների Հանրապետությունը պահպանել իբրև մի նետ, որ ընկ. Լենինի անվրեպ ձեռքով նետված է թշնամիների բանակատեղը, իբրև ճնշումից ու շահագործումից փրկվելու իրենց հույսերի հենարան, իբրև ազատության ուղին իրենց ցույց տվող ճիշտ փարոս: Նրանք ցանկանում են այն պահպանել, և նրանք կալվածատերերին ու կապիտալիստներին թույլ չեն տա ավերել այն: Դրա մեջ է մեր ուժը: Դրա մեջ է բոլոր յերկրների աշխատավորների ուժը: Դրա մեջ էլ հենց ամբողջ աշխարհի բուրժուազիայի թուլությունն է:

Լենինը Խորհուրդների Հանրապետությանը յերբեք չի նայել իբրև ինքնանպատակի: Նա այդ միշտ դիտել է իբրև Արևմուտքի և Արևելքի յերկիրներում հեղափոխական շարժումն ուժեղացնելու մի անհրաժեշտ օղակ, իբրև կապիտալի վրա ամբողջ աշխարհի աշխատավորների հաղթանակը հեշտացնելու մի անհրաժեշտ օղակ: Լենինը գիտեր, որ միմիայն այդպիսի ըմբռնումն է ճիշտ՝ ո՛չ միայն միջազգային տեսակետից, այլև Խորհուրդների Հանրա-

լավացումը մեր կուսակցության կարեվորագույն խնդիրներից մեկն է: Քերզոնի ուլտիմատումի և Գերմանիայի ճգնաժամի հետ կապված դեպքերն ավելորդ անգամ հաստատեցին, որ Լենինը, ինչպես միշտ, իրավացի էր: Արդ յերդվենք, ընկերնե՛ր, որ մենք ուժերս չենք խնայի, որպեսզի ամրացնենք մեր Կարմիր բանակը, մեր Կարմիր նավատորմը:

Որպես մի հսկա ժայռ կանգնած է մեր յերկիրը՝ շրջապատված բուրժուական պետությունների օվկիանոսով: Ալիքներ ալիքների հետևից գլորվում են նրա վրա, սպառնալով հեղեղել ու խորտակել: Իսկ ժայռը շարունակում է անդրդվելի կանգնած մնալ: Ինչո՞ւմն է նրա ուժը: Ոչ միայն նրանում, որ մեր յերկիրը պահպանվում է բանվորների ու գյուղացիների դաշինքով, որ նա մարմնավորվում է ազատ ազգությունների դաշինքը, որ նրան պաշտպանում է Կարմիր բանակի և Կարմիր նավատորմի հզոր ձեռքը: Մեր յերկրի ուժը, նրա ամրությունը, նրա հաստատունությունը նրանումն է, որ նա խորին համակրանք ու անխորտակելի օժանդակություն ունի ամբողջ աշխարհի բանվորների



ու գյուղացիների սրտերում: Ամբողջ աշխարհի բանվորներն ու գյուղացիները ցանկանում են Խորհուրդների Հանրապետությունը պահպանել իբրև մի նետ, որ ընկ. Լենինի անվրեպ ձեռքով նետված է թշնամիների բանակատեղը, իբրև ճնշումից ու շահագործումից փրկվելու իրենց հույսերի հենարան, իբրև ազատության ուղին իրենց ցույց տվող ճիշտ փարոս: Նրանք ցանկանում են այն պահպանել, և նրանք կալվածատերերին ու կապիտալիստներին թույլ չեն տա ավերել այն: Դրա մեջ է մեր ուժը: Դրա մեջ է բոլոր յերկրների աշխատավորների ուժը: Դրա մեջ էլ հենց ամբողջ աշխարհի բուրժուազիայի թուլությունն է:

Լենինը Խորհուրդների Հանրապետությունը յերբեք չի նայել իբրև ինքնանպատակի: Նա այդ միշտ դիտել է իբրև Արեվմուտքի և Արևելքի յերկիրներում հեղափոխական շարժումն ուժեղացնելու մի անհրաժեշտ օղակ, իբրև կապիտալի վրա ամբողջ աշխարհի աշխատավորների հաղթանակը հեշտացնելու մի անհրաժեշտ օղակ: Լենինը գիտեր, որ միմիայն այդպիսի ըմբռնումն է ճիշտ՝ ո՛չ միայն միջազգային տեսակետից, այլև Խորհուրդների Հանրա-

 

պետությունը պահպանելու տեսակետից: Լենինը գիտեր, որ միայն այդ ճանապարհով կարելի յե ամբողջ աշխարհի աշխատավորների սրտերը բոցավառել՝ ազատության համար մղվող վճռական մարտերի համար: Ահա թե ինչու նա, պրոլետարիատի հանճարեղ առաջնորդներից ամենահանճարեղը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման հենց հետևյալ օրը դրեց բանվորների Ինտերնացիոնալի հիմքը: Ահա թե ինչու նա չեր դադարում ընդլայնելու և ամրապնդելու ամբողջ աշխարհի աշխատավորների միությունը—Կոմունիստական Ինտերնացիոնալը:

Այս օրերին մենք տեսանք տասնյակ ու հարյուր հազարավոր աշխատավորների ուխտագնացությունը դեպի ընկեր Լենինի դագաղը: Վորոշ ժամանակ հետո դուք կըտեսնեք միլիոնավոր աշխատավորների ներկայացուցիչների ուխտագնացությունը դեպի ընկեր Լենինի գերեզմանը: Կարող եք չկասկածել, որ միլիոնավորների ներկայացուցիչների հետևից կձգվեն հետագայում տասնյակ ու հարյուր միլիոնավորների ներկայացուցիչները աշխարհի բոլոր ծայրերից, վորպեսզի վկայեն, որ ընկեր



Լենինը վո՛չ միայն ռուսական պրոլետարիատի, վո՛չ միայն յեվրոպական բանվորների, վո՛չ միայն գաղութային Արևելքի առաջնորդն եր, այլև յերկրագնդի ամբողջ աշխատավորության առաջնորդը:

Հեռանալով մեզնից՝ ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց—հավատարիմ մնալ Կոմունիստական Ինտերնացիոնալի սկզբունքներին: Յերդվում ենք քեզ, ընկե՛ր Լենին, Վոր մենք մեր կյանքը չենք խնայի, վորպեսզի ամրապնդենք ու ընդլայնենք ամբողջ աշխարհի աշխատավորների միությունը—Կոմունիստական Ինտերնացիոնալը:

«Правда» № 23, 30 հունվարի 1924 թ.

# ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

**Ճառ՝ կրեմլյան կուրսանտների յերեկույթում 1924 թ. հունվարի 28-ին**

Ընկերնե՛ր: Ինձ ասացին, թե այստեղ ձեզ մոտ հուշերի յերեկո յե կազմակերպված Լենինի մասին, իսկ յես հրավիրված եմ յերեկույթին իբրև զեկուցողներից մեկը: Յես կարծում եմ, վոր Լենինի գործունեյության մասին կապակցված մի զեկուցում տալու անհրաժեշտություն չկա: Յես կարծում եմ, վոր ավելի լավ կլիներ սահմանափակվել մի շարք փաստեր հաղորդելով, վորոնք նշում են Լենինի մի քանի առանձնահատկությունները իբրև մարդու և իբրև գործչի: Այդ փաստերի միջև գուցե ներքին կապ էլ չլինի, բայց այդ չի կարող վճռողական նշանակություն ունենալ Լենինի մասին ընդհանուր պատկերացում ստանալու համար: Համենայն դեպս, յես տվ-



յալ դեպքում հնարավորություն չունեմ ձեզ ավելին տալու, քան այն, ինչ վերը խոստացա:

## ԼՆՌԱՆ ԱՐԾԻՎԸ

Յես Լենինի հետ ծանոթացա առաջին անգամ 1903 թ.: Ճիշտ է, այդ ծանոթությունն անձնական չէր, այլ հեռակա, գրագրության կարգով: Բայց նա իմ մեջ թողել է անջնջելի տպավորություն, վորը յես չեմ մոռացել կուսակցության մեջ իմ ամբողջ աշխատանքի ժամանակ: Յես այն ժամանակ Սիբիրում եյի, աքսորում: 90-ական թվականների վերջից և մանավանդ 1901 թվականից, «Искра»-յի հրատարակումից հետո, Լենինի հեղափոխական գործունեյության հետ իմ ունեցած ծանոթությունն ինձ այն համոզման բերեց, վոր մենք հանձին Լենինի արտասովոր մի մարդ ունենք: Նա այն ժամանակ իմ աչքում կուսակցության հասարակ մի ղեկավար չէր, նա նրա փաստական ստեղծողն եր, վորովհետև մենակ նա յեր, վոր հասկանում եր մեր կուսակցության ներքին եյությունը և անհետաձգելի կարիքները: Յերբ յես նրան համեմատում եյի մեր կու-

ցակցության մնացած ղեկավարների հետ, ինձ ամբողջ ժամանակ թվում եր, թե Լենինի զինակիցները—Պլեխանովը, Մարտովը, Ակսելրոդը և ուրիշները— մի ամբողջ գլխով ցածր են Լենինից, թե Լենինը նրանց համեմատությամբ վո՛չ թե պարզապես ղեկավարներից մեկն է, այլ բարձրագույն տիպի մի ղեկավար, լեռան արծիվ, վորը պայքարի մեջ յերկյուղ ասած բանը չի ճանաչում և կուսակցությունը համարձակորեն առաջ է տանում ռուսական հեղափոխական շարժման անծանոթ ուղիներով: Այդ տպավորությունն այնքան խորն եր թափանցել իմ հոգում, վոր յես անհրաժեշտություն զգացի այդ մասին գրել իմ մի մոտիկ բարեկամին, վորն այն ժամանակ տարագրության մեջ եր, նրանից կարծիք պահանջելով: Միքանի ժամանակ հետո, Սիբիրում աքսորական լինելով,— այդ 1903 թ. վերջն եր,— յես իմ բարեկամից ստացա հրճվանքով լի մի պատասխան և պարզ, բայց խորապես բովանդակալից նամակ Լենինից, վորին, ինչպես պարզվեց, իմ բարեկամը ծանոթացրել եր նամակիս: Լենինի այդ նամակը համեմատաբար փոքր եր, բայց տալիս եր մեր կու-



սակցության պրակտիկայի համարձակ, աներկյուղ քննադատությունը և կուսակցության աշխատանքի ամբողջ պլանի դարմանալի պարզ ու հակիրճ շարադրանքը մոտավոր ժամանակաշրջանի համար: Միայն Լենինն եր կարողանում ամենախճճված բաների մասին գրել այդպես հասարակ ու պարզ, սեղմ ու համարձակ—յերբ յուրաքանչյուր ֆրազ վո՛չ թե խոսում, այլ կրակում է: Այդ պարզ ու համարձակ փոքրիկ նամակն ինձ ե՛լ ավելի ամրապնդեց նրանում, վոր հանձին Լենինի մենք ունենք մեր կուսակցության լեռան արծիվը: Յես ինձ ներել չեմ կարող, վոր Լենինի այդ նամակը, ինչպես և շատ ուրիշ նամակներ, յես կրակի մատնեցի, ըստ հին ընդհատակյա աշխատողի սովորության:

Այդ ժամանակվանից սկսվեց իմ ծանոթությունը Լենինի հետ:

## ՀԱՄԵՍՏՈՒԹՅՈՒՆԸ

Յես Լենինին առաջին անգամ հանդիպեցի 1905 թ. դեկտեմբերին՝ բոլշևիկների Տամմերֆորսի (Ֆինլանդիայում) կոնֆերանսում: Յես հույս ունեյի տեսնելու մեր կուսակցության լեռան արծվին, մեծ

մարդուն, մեծ վո՛չ միայն քաղաքականապես, այլ, յեթե կուզեք, նաև ֆիզիկապես, վորովհետև Լենինին իմ յերևակայության մեջ պատկերանում էր իբրև մի հսկա, բարեկազմ ու վայելչատես։ Իսկ վորպիսի՛ն էր իմ հիասթափությունը, յերբ տեսա մի ամենասովորական մարդ, միջակից ցած հասակով, վորը վոչնչով, բառացիորեն վոչնչով չէր տարբերվում սովորական մահկանացուներից...

Ընդունված է, վոր «մեծ մարդը» սովորաբար պետք է ուշանա ժողովներին, վորպեսզի ժողովի անդամները սրտատրոփ սպասեն նրա հայտնվելուն, ընդվորում մեծ մարդու հայտնվելուց առաջ ժողովի անդամները նախազգուշացնում են՝ «սը՛ս... հանդարտ... նա գալիս է»։ Այդ ծիսականությունն ինձ ավելորդ չէր թվում, վորովհետև տպավորություն է թողնում, հարգանք է ներշնչում։ Իսկ վորպիսի՛ հիասթափություն, յերբ իմացա, վոր Լենինը ժողովի յե յեկել պատվիրակներից ավելի վաղ և, մի անկյուն քաշված՝ հասարակ մարդու պես զրուցում է, ամենասովորական կերպով զրուցում է կոնֆերանսի ամենասովորական պատվիրակների հետ։



Չեմ ծածկի, վոր այդ բանն ինձ այն ժամանակ վորոշ անհրաժեշտ կանոնների վորոշ խախտում թվաց։

Միայն հետագայում յես հասկացա, վոր Լենինի այդ պարզությունն ու համեստությունը, աննկատելի մնալու կամ, համենայն դեպս, աչքի չզարնելու և իր բարձր դիրքը չշեշտելու այդ ձգտումը,— այդ գիծը Լենինի ամենաուժեղ կողմերից մեկն է, իբրև նոր մասսաների, մարդկության ամենախոր «ներքնախավերի» պարզ ու սովորական մասսաների նոր առաջնորդի։

## ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

Այդ կոնֆերանսում յերևելի եյին Լենինի արտասանած յերկու ճառերը՝ ընթացիկ մոմենտի և ագրարային հարցի մասին։ Դրանք, դժբախտաբար, չեն պահպանվել։ Դրանք վոգեշունչ ճառեր եյին, վոր բուռն խանդավառությամբ համակեցին ամբողջ կոնֆերանսին։ Համոզման անսովոր ուժը, հասարակ ու պարզ փաստարկումը, կարճ ու ամենին հասկանալի ֆրազները, ցուցամոլության բացակայությունը, գլխապտույտ ժեստերի և տպավորություն գործելու ձգտող եֆեկտավոր ֆրազների

բացակայությունը,— այդ ամենը Լենինի ճառերը նպաստավոր կերպով տարբերում էր սովորական «պառլամենտական» հռետորների ճառերից:

Բայց ինձ այն ժամանակ Լենինի ճառերի այդ կողմը չէր հմայում: Ինձ հմայում էր Լենինի ճառերի մեջ տրամաբանության այն անդիմադրելի ուժը, որը մի քիչ չոր է, բայց դրա փոխարեն հիմնավորապես համակում է լսարանը, աստիճանաբար էլեկտրականացնում նրան և հետո, ինչպես ասում են, գերի վերցնում առանց մնացորդի: Ես հիշում եմ, թե ինչպես այն ժամանակ պատվիրակներից շատերն ասում էին. «Լենինի ճառերի մեջ տրամաբանությունը ինչ-որ ամենազոր շոշափուկներ են, որոնք քեզ չորս կողմից աքցանի պես ցանցում են և որոնց գրկից դուրս պրծնելու ուժ չկա. կա՛մ անձնատուր յեղիր, կա՛մ վճռիր լիովին խորտակվել»:

Ես կարծում եմ, որ Լենինի ճառերի մեջ այդ առանձնահատկությունը նրա հռետորական արվեստի ամենաուժեղ կողմն է:



## ԱՌԱՆՑ ՆՎՆՎԱԼՈՒ

Երկրորդ անգամ ես Լենինին հանդիպեցի 1906 թ. մեր կուսակցության Ստոկհոլմի համագումարում: Հայտնի է, որ այդ համագումարում բոլշևիկները փոքրամասնություն կազմեցին, պարտություն կրեցին: Ես այդ ժամանակ Լենինին առաջին անգամն էի տեսնում պարտվածի դերում: Նա մազաչափ անգամ նման չէր այն առաջնորդներին, որոնք պարտությունից հետո նվնվում և վհատվում են: Ընդհակառակը, պարտությունը Լենինին դարձրել էր խտացած յեռանդ, որ իր կողմնակիցներին ոգևորում է նոր մարտերի, ապագա հաղթանակի համար: Ես խոսում եմ Լենինի պարտության մասին: Բայց այդ ի՞նչ պարտություն էր որ: Պետք էր նայել Լենինի հակառակորդներին, Ստոկհոլմի համագումարի հաղթողներին՝ Պլեխանովին, Ակսելրոդին, Մարտովին և ուրիշներին. նրանք շատ քիչ էին նման իսկական հաղթողների, որովհետև Լենինը մենշևիզմի իր անխնա քննադատության մեջ նրանց վրա, ինչպես ասում են, ողջ տեղ չէր թողել: Ես հիշում եմ, ինչպես մենք, բոլշևիկ պատվիրակներս, իրար

գլխի հավաքված, նայում էինք Լենինին, խորհուրդ հարցնելով նրանից: Միքանի պատվիրակների ճառերում յերևում էր հոգնածություն, վհատություն: Միտս է, թե ինչպես Լենինը նման խոսքերին իբրև պատասխան ատամների արանքից կծու կերպով ասաց. «Մի՛ նվնվաք, ընկերնե՛ր, մենք անպայման կհաղթենք, վորովհետև մենք իրավացի յենք»: Ատելություն դեպի նվնվացող ինտելիգենտները, վստահություն իր ուժերին, հավատ հաղթանակին—ահա թե ինչի մասին էր խոսում մեզ հետ այն ժամանակ Լենինը: Զգում էինք, վոր բոլշևիկների պարտությունը ժամանակավոր է, վոր բոլշևիկները պետք է հաղթեն մոտիկ ապագայում: «Զնվնվալ պարտության առթիվ»— այդ՝ Լենինի գործունեության մեջ հենց այն առանձնահատկությունն է, վորը նրան ոգնում էր իր շուրջը մինչև վերջը անձնվեր և իր ուժերին հավատացող բանակ համախմբելու:

## ԱՌԱՆՑ ՊԱՐԾԵՆԿՈՏՈՒԹՅԱՆ

Հետևյալ համագումարում, 1907 թ. Լոնդոնում բոլշևիկները հաղթող դուրս յեկան: Յես այն ժամանակ Լենինին առա-



ջին անգամն էի տեսնում հաղթողի դերում: Սովորաբար, հաղթությունը պտտեցնում է առաջնորդներից վոմանց գլուխները, նրանց դարձնում է գոռոզ և պարծենկոտ: Նման դեպքերում ամենից հաճախ սկսում են հաղթանակ տոնել, դափնիների վրա հանգստանալ: Բայց Լենինը մազաչափ անգամ նման չէր այդպիսի առաջնորդներին: Ընդհակառակը, հենց հաղթությունից հետո նա դառնում էր առանձնապես զգոն և աչալուրջ: Միտս է, թե ինչպես Լենինն այն ժամանակ համառորեն ներշնչում էր պատվիրակներին՝ «առաջին գործն է՝ հաղթությամբ չտարվել և չմեծամտանալ. յերկրորդ գործն է՝ ամրացնել ձեռք բերված հաղթությունը. յերրորդն է՝ հակառակորդին ջախջախել մինչև վերջը, վորովհետև նա միայն ջարդված է, բայց բնավ ամբողջովին ջախջախված»: Նա կծու կերպով ծաղրում էր այն պատվիրակներին, վորոնք թեթևամտորեն հավատացնում էին, թե «այսուհետև մենշևիկների բանը պրծած է»: Նրա համար դժվար չէր ապացուցել, վոր մենշևիկները դեռևս արմատներ ունեն բանվորական շարժման մեջ, վոր նրանց դեմ պետք է շնորհքով պայքարել, ամեն կերպ խուսափելով իր

 

ուժերը գերագնահատելուց, և մանավանդ հակառակորդի ուժերը թերագնահատելուց:

«Հաղթությամբ չպարծենալ»—այդ՝ Լենինի բնավորության մեջ հենց այն առանձնահատկությունն է, որը նրան ոգնում եր զգաստորեն կշռելու հակառակորդի ուժերը և կուսակցությունն ապահովագրելու հնարավոր անակնկալներից:

## ՍԿԶԲՈՒՆՔԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ

Կուսակցության առաջնորդները չեն կարող թանգ չհամարել իրենց կուսակցության մեծամասնության կարծիքը: Մեծամասնությունը մի ուժ է, որը չի կարող հաշվի չառնել առաջնորդը: Լենինն այդ բանն ավելի վատ չեր հասկանում, քան կուսակցության որևէ այլ առաջնորդ: Բայց Լենինը յերբեք չեր դառնում մեծամասնության գերին, մանավանդ յերբ այդ մեծամասնությունն իր տակ սկզբունքային հիմք չեր ունենում: Մեր կուսակցության պատմության մեջ մոմենտներ եյին լինում, յերբ մեծամասնության կարծիքը կամ կուսակցության րոպեյական շահերը կոնֆլիկտի եյին բախվում պրոլետարիատի արմատական շահերի հետ: Այդպիսի դեպքերում



Լենինն, առանց յերկար մտածելու, վճռականորեն բռնում եր սկզբունքայնության կողմը՝ ընդդեմ կուսակցության մեծամասնության: Ավելին. նա այդպիսի դեպքերում չեր վախենում տառացիորեն մենակ դուրս գալու ամենքի դեմ, հույսը դրած այն բանին,— ինչպես նա հաճախ ասում եր այդ մասին,— որ «սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է»: Այդ տեսակետից հատկապես բնորոշ են հետևյալ յերկու փաստերը:

Առաջին փաստ: 1909–1911 թ. թ. ժամանակաշրջանն եր, յերբ կուսակցությունը հակահեղափոխության կողմից ջարդված, լիակատար քայքայման մեջ եր: Դա կուսակցության չհավատալու ժամանակաշրջանն եր, կուսակցությունից ո՛չ միայն ինտելիգենտների, այլև մասամբ բանվորների համատարած փախուստի ժամանակաշրջանը, ընդհատակը ժխտելու ժամանակաշրջանը, լիկվիդատորության ու փլուզման ժամանակաշրջանը: Այն ժամանակ ո՛չ միայն մենշևիկները, այլև բոլշևիկները մի ամբողջ շարք ֆրակցիաներ ու հոսանքներ եյին ներկայացնում, որոնք մեծ մասամբ կտրված եյին բանվորական

*շարժումից: Հայտնի յե, վոր հենց այդ ժամանակաշրջանում ծագեց ընդհատակը լիովին լիկվիդացիայի յենթարկելու և բանվորներին լեգալ, ստոլիպինյան լիբերալ կուսակցության մեջ կազմակերպելու գաղափարը: Լենինն այն ժամանակ միակն եր, վոր չենթարկվեց տրամադրությունների ընդհանուր համաճարակին և բարձր եր պահում կուսակցականության դրոշը զարմանալի համբերությամբ և չտեսնված համառությամբ հավաքելով կուսակցության բաժան-բաժան ու ջարդված ուժերը, կռվելով բոլոր և ամեն տեսակի հակակուսակցական հոսանքների դեմ բանվորական շարժման ներսում, աննախընթաց արիությամբ և չտեսնված հաստատակամությամբ պաշտպանելով կուսակցականությունը:*

*Հայտնի յե, վոր կուսակցականության համար մղած այդ վեճում Լենինը հաղթող դուրս յեկավ:*

Յերկրորդ փաստ: 1914—1917 *թ. թ. ժամանակաշրջանն եր, իմպերիալիստական պատերազմի յեռուն ժամանակաշրջանը, յերբ բոլոր կամ գրեթե բոլոր սոցիալ-դեմոկրատական և սոցիալիստական կուսակ-*



*ցությունները, ընդհանուր հայրենասիրական մոլուցքին յենթարկվելով, ծառայադրվեցին հայրենի իմպերիալիզմին: Այդ այն ժամանակաշրջանն եր, յերբ II Ինտերնացիոնալը կապիտալի առջև խոնարհեցրեց իր դրոշները, յերբ շովինիստական ալիքի առջև չդիմացան նույնիսկ այնպիսի մարդիկ, ինչպես Պլեխանովն է, Կաուցկին, Գեդը և ուրիշները: Լենինն այն ժամանակ միակն եր կամ գրեթե միակը, վոր վճռական պայքար հարուցեց սոցիալ-շովինիզմի և սոցիալ-պացիֆիզմի դեմ, մերկացնում եր Գեդերի ու Կաուցկիների դավաճանությունը և խարանում եր միջանկյալ* «հեղափոխականների» կիսակատարությունը: *Լենինը հասկանում եր, վոր ինքն իր հետևն ունի աննշան փոքրամասնություն, բայց այդ նրա համար վճռողական նշանակություն չուներ, վորովհետև նա գիտեր, վոր միակ ճիշտ քաղաքականությունը, վորն ապագա ունի, հետևողական ինտերնացիոնալիզմի քաղաքականությունն է, վորովհետև նա գիտեր, վոր սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է:*

*Հայտնի յե, վոր նոր Ինտերնացիոնալի*

համար մղված այդ վեճի մեջ ես Լենինը հաղթող դուրս յեկավ։

«Սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է»— ահա նույն այն ֆորմուլան է, վորի օգնությամբ Լենինը գրոհով վերցնում եր նոր «անառիկ» դիրքեր, հեղափոխական մարքսիզմի կողմը նվաճելով պրոլետարիատի լավագույն տարրերին։

## ՀԱՎԱՏ ԴԵՊԻ ՄԱՍՍԱՆԵՐԸ

Կուսակցությունների թեորետիկներն ու առաջնորդները, վորոնք գիտեն ժողովուրդների պատմությունը, սերտել են հեղափոխությունների պատմությունը սկզբից մինչև վերջ, յերբեմն բռնված են լինում մի անվայելուչ հիվանդությամբ։ Այդ հիվանդությունը կոչվում է վախ մասսաներից, հավատի բացակայություն դեպի մասսաների ստեղծագործական ընդունակությունները։ Այդ հողի վրա յերբեմն առաջ է գալիս առաջնորդների մի տեսակ արիստոկրատիզմ մասսաների վերաբերմամբ, վորոնք փորձ չունեն հեղափոխությունների պատմության մեջ, բայց կոչված են ջախջախելու հինը և կառուցելու



նորը։ Վախ, թե տարերքը կարող են մոլեգնել, թե մասսաները կարող են «շատ ավելորդ բան ջախջախել», մասսաներին գրքույկներով սովորեցնել ջանացող, բայց մասսաներից բան սովորել չկամեցող դայակի դեր խաղալու ցանկություն,— այս է այդ տեսակի արիստոկրատիզմի հիմքը։

Լենինն այդպիսի առաջնորդների լիակատար հակադրությունն եր։ Յես չեմ ճանաչում մի ուրիշ հեղափոխական, վորն այնպես խորը հավատար պրոլետարիատի ստեղծագործական ուժերին և նրա դասակարգային բնազդի հեղափոխական նպատակահարմարությանը, ինչպես Լենինը։ Յես չեմ ճանաչում մի ուրիշ հեղափոխական, վորը կարողանար այնպես անխնա խարազանել «հեղափոխության քաոսի» և «մասսաների ինքնագլուխ գործողությունների վախկանալիայի» ինքնագոհ քննադատներին,— ինչպես Լենինը։ Միտս է, ինչպես մի զրույցի ժամանակ, ի պատասխան ընկերներից մեկի նկատողության, թե «հեղափոխությունից հետո պետք է նորմալ կարգ սահմանվի», Լենինը սարկազմով նկատեց. «Դժբախտություն է, յեթե հեղափոխականի հավակնություն ու-

նեցող մարդիկ մտածում են, վոր պատմության մեջ ամենից ավելի նորմալ կարգը հեղափոխության կարգն է»։

Այստեղից՝ Լենինի արհամարհական վերաբերմունքը դեպի այն բոլոր մարդիկ, վորոնք աշխատում էին բարձրից նայել մասսաներին և նրանց սովորեցնել գրքույկներով։ Այստեղից՝ Լենինի անդադրում քարոզը—սովորել մասսաներից, իմաստավորել նրանց գործողությունները, ջանադիր ուսումնասիրել մասսաների պայքարի պրակտիկ փորձը։

Հավատ մասսաների ստեղծագործական ուժերին— սա Լենինի գործունեության մեջ հենց այն առանձնահատկությունն է, վորը նրան հնարավորություն էր տալիս իմաստավորելու տարերքը և նրա շարժումն ուղղելու պրոլետարական հեղափոխության հունով։

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՆՃԱՐԸ

Լենինը ծնված էր հեղափոխության համար։ Նա իսկապես հեղափոխական պայթյունների հանճարը և հեղափոխական ղեկավարման մեծագույն վարպետն էր։ Նա իրեն յերբեք այնպես ազատ և ուրախ չէր



զգում, ինչպես հեղափոխական ցնցումների դարաշրջանում։ Յես դրանով բնավ չեմ ուզում ասել, թե Լենինը միանման քաջալերում էր ամեն մի հեղափոխական ցնցում կամ թե նա միշտ և ամեն պայմաններում հեղափոխական պայթյունների կողմնակից էր։ Ամենևին։ Յես դրանով միայն ասել եմ ուզում, թե Լենինի հանճարեղ խորաթափանցությունը յերբեք այնպես լրիվ ու պարզորոշ չէր դրսևորվում, ինչպես հեղափոխական պայթյունների ժամանակ։ Հեղափոխական շրջադարձերի ժամանակ նա տառացիորեն փթթում էր, դառնում էր հստակատես, նախագուշակում էր դասակարգերի շարժումը և հեղափոխության հավանական զիգզագները, դրանք վոնց վոր ձեռքի ափի մեջ տեսնելով։ Իզուր չէ, վոր մեր կուսակցական շրջաններում ասում է, թե «Իլյիչը հեղափոխության ալիքների մեջ կարողանում է այնպես լողալ, ինչպես ձուկը ջրում»։

Այստեղից էլ՝ Լենինի տակտիկական լոզունգների «ապշեցուցիչ» պարզությունը և հեղափոխական մտահղացումների «գլխապտույտ» համարձակությունը։

Միտս են գալիս յերկու առանձնապես բնորոշ փաստեր, վորոնք նշում են Լենինի այդ առանձնահատկությունը:

Առաջին փաստ: Հոկտեմբերյան հեղաշրջումից առաջ յեղած ժամանակաշրջանն եր, յերբ միլիոնավոր բանվորներ, գյուղացիներ ու զինվորներ թիկունքի և ռազմաճակատի ճգնաժամից դրդված հաշտություն և ազատություն եյին պահանջում, յերբ գեներալիտետն ու բուրժուազիան զինվորական դիկտատուրա եյին նախապատրաստում «պատերազմ մինչև վախճան»-ի ոգուն, յերբ ամբողջ այսպես կոչված «հասարակական կարծիքը», բոլոր այսպես կոչված «սոցիալիստական կուսակցությունները» բոլշևիկների դեմ եյին կանգնած, արհամարհանքով նրանց «գերմանական լրտեսներ» անվանելով, յերբ Կերենսկին փորձում եր ընդհատակ քշել—և մասամբ արդեն կարողացավ քշել—բոլշևիկների կուսակցությունը, յերբ ավստրո-գերմանական կոալիցիայի տակավին հզոր կարգապահ բանակները կանգնած եյին մեր հոգնած և քայքայվող բանակների դեմ, իսկ արևմտա-յեվրոպական «սոցիալիստները» բարեհաջող կերպով բլոկի մեջ եյին գտնը-



վում իրենց կառավարությունների հետ հօգուտ «պատերազմի մինչև լիակատար հաղթանակ»...

Ի՞նչ եր նշանակում ապստամբություն հարուցել այդպիսի մոմենտում: Ապստամբություն բարձրացնել այդպիսի դրությունում՝ նշանակում ե ամեն ինչ վտանգի յենթարկել: Բայց Լենինը ռիսկ անելուց չեր վախենում, վորովհետև գիտեր, իր պարզատես հայացքով տեսնում եր, վոր ապստամբությունն անխուսափելի յե, վոր ապստամբությունը կհաղթանակի, վոր ապստամբությունը Ռուսաստանում՝ կնախապատրաստի իմպերիալիստական պատերազմի վերջը, վոր ապստամբությունը Ռուսաստանում՝ կալեկոծի Արևմուտքի բազմատանջ մասսաներին, վոր ապստամբությունը Ռուսաստանում՝ իմպերիալիստական պատերազմը կվերածի քաղաքացիական պատերազմի, վոր ապստամբությունը կտա Խորհուրդների հանրապետություն, վոր Խորհուրդների հանրապետությունն ամբողջ աշխարհում հեղափոխական շարժման պատվար կծառայի:

Հայտնի յե, վոր Լենինի այդ հեղափո-

խական կանխատեսումը հետագայում կատարվեց չտեսնված ճշտությամբ:

Յերկրորդ փաստ: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո առաջին օրերն եյին, յերբ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը փորձում եր խռովարար գեներալին, գլխավոր հրամանատար Դուխոնինին հարկադրել, վոր դադարեցնի ռազմական գործողությունները և զինադադարի մասին բանակցություններ սկսի գերմանացիների հետ: Միտս ե, ինչպես Լենինը, Կրիլենկոն (ապագա գլխավոր հրամանատարը) և յես մեկնեցինք Գլխավոր շտաբը Պիտերում, հեռախոսի մոտ՝ Դուխոնինի հետ բանակցելու: Սարսեցուցիչ րոպե յեր: Դուխոնինը և Կայանը կատեգորիկ կերպով հրաժարվեցին Ժողկոմխորհի հրամանը կատարելուց: Բանակի հրամանատարական կազմն ամբողջությամբ Կայանի ձեռքին եր: Ինչ վերաբերում ե զինվորներին, ապա անհայտ եր, թե ինչ կասի 12 միլիոնանոց բանակը, վոր յենթարկված եր այսպես կոչված բանակային կազմակերպություններին, վորոնք Խորհրդային իշխանության դեմ եյին տրամադրված: Պիտերի մեջ հենց, ինչպես հայտնի յե, այն ժամանակ հասունանում եր



յունկերների ապստամբությունը: Բացի այդ, Կերենսկին պատերազմի յեր գնում Պիտերի վրա: Միտս ե, թե ինչպես հեռախոսի մոտ վորոշ լռությունից հետո Լենինի դեմքը ինչ-վոր անսովոր լույսով փայլեց: Նկատելի յեր, վոր նա արդեն վորոշում ե ընդունել: «Գնանք ռադիոյան,— ասաց Լենինը,— նա մեզ ոգուտ կտա. մենք հատուկ հրամանով պաշտոնանկ կանենք գեներալ Դուխոնինին, նրա տեղը գլխավոր հրամանատար կնշանակենք ընկ. Կրիլենկոյին և հրամանատարական կազմի գլխի վրայով զինվորներին կդիմենք մի կոչով՝ շրջապատել գեներալներին, դադարեցնել ռազմական գործողությունները, կապվել ավստրո-գերմանական զինվորների հետ և հաշտության գործը վերցնել իրենց սեփական ձեռքը»:

Դա մի «թռիչք եր դեպի անհայտությունը»: Բայց Լենինը չեր վախենում այդ «թռիչքից», ընդհակառակը, դրան ընդառաջ եր գնում, վորովհետև գիտեր, վոր բանակը հաշտություն ե ցանկանում, և նա կնվաճի հաշտությունը, հաշտության ճանապարհից սրբելով բոլոր և ամեն տեսակի խոչընդոտները, վորովհետև նա գիտեր,

որ հաշտություն հաստատելու այդպիսի յեղանակը զուր չի անցնի ավստրո-գերմանական զինվորների համար, որ դա առանց բացառության բոլոր ռազմաճակատներում կսանձալուծի հաշտության ձգտումը:

Հայտնի յե, որ Լենինի այդ հեղափոխական կանխատեսությունն ևս հետագայում կատարվեց ամենայն ճշտությամբ:

Հանճարեղ խորաթափանցություն, վերահաս դեպքերի ներքին իմաստն արագորեն ըմբռնելու և գուշակելու ընդունակություն — այդ՝ Լենինի հենց այն հատկությունն ե, որը հեղափոխական շրջադարձերում նրան օգնում եր նշելու ճիշտ ստրատեգիա ու հստակ վարքագիծ:

«Правда» № 34, 12 փետրվարի 1924 թ.



# ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 13-ԱՄՅԱԿԸ

Սրանից տասներեք տարի առաջ մեր յերկրի բանվորներն ու աշխատավորները զրկվեցին Լենինից — համաշխարհային պրոլետարիատի մեծագույն առաջնորդից, հեղափոխության մեծագույն հանճարից, որի անունն ու գործը կապրեն դարեր իվեր:

Լենինը հեռացավ մեզանից մի այնպիսի ժամանակ, յերբ մեր կուսակցությունը նոր տնտեսական քաղաքականության հիման վրա տանում եր անդուլ աշխատանք վերականգնելու իմպերիալիստական ու քաղաքացիական պատերազմների հետևանքով ավերված ժողովրդական տնտեսությունը, միախմբելու բանվոր դասակարգը, կոնսոլիդացիայի յենթարկելու նրա ուժերը, ամրացնելու բանվոր դասակարգի ու գյուղա-

ցիական հիմնական մասսաների դաշինքը: Այն ժամանակ մենք դեռ չէինք կարող խոսել սոցիալիզմի հաղթանակի մասին մեր երկրում: «Ո՞վ ո՞ւմ» հարցը դեռ լուծված չէր: Սոցիալիստական տարրերը ժողովրդական տնտեսության մեջ վերելքի շրջան էին ապրում, նշմարվել էր նրանց գերակշռությունը, բայց դեռ աճում էին նաև կապիտալիստական տարրերը, իսկ գյուղում տիրապետողը հանդիսանում էր մանր, գաճաճ սեփականատիրությունը, մեր երկրում ջախջախված կապիտալիզմի առավել խոշոր այդ մնացորդը

Դասակարգային թշնամին, վոր իր տիրապետության վերականգնման հույսերը կապում էր Լենինի մահվան հետ, փորձ արեց ազատություն տալ իր ձեռքերին: Լենինյան-ստալինյան կուսակցության թրծված թշնամիները— Տրոցկին և նրա բոլոր համախոհները, Լենինի մահվանից հետո առավել ակտիվությամբ սկսեցին գրոհել լենինյան-ստալինյան կուսակցության, նրա ղեկավարության, կուսակցության ու սոցիալիզմի շինարարության գլուխ անցած ընկեր Ստալինի դեմ:

Այդ ժամանակից անցել է ընդամենը 13



տարի: Ստալինի հաղթական ղեկավարությամբ այդ կարճ տարիների ընթացքում անցած ուղին մեր երկրում պսակվել է այնպիսի խոշորագույն նվաճումներով, վորոնց վրա մեծ զարմանքով է նայում ամբողջ աշխարհը, վորոնք վողջ աշխարհի բանվորներին ու աշխատավորներին օրինակ են ծառայում կապիտալիզմի դեմ պայքարելու, նրան կործանելու և նոր սոցիալիստական հասարակարգ կառուցելու գործում:

Մեր երկրում արդեն լիովին տիրապետում է տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը: Մեր երկրում վերացված են արդեն շահագործող դասակարգերը, վոչնչացվել է մարդու կողմից մարդու շահագործումը, բուռն թափով աճում է քաղաքի ու գյուղի աշխատավորների բարեկեցությունը, կուլտուրականությունն ու սոցիալիստական գիտակցությունը:

Մեր երկրում հաղթանակած սոցիալիզմի արձանագրումը տալիս է Խորհուրդների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարում ընդունված ստալինյան Սահմանադրությունը:

Նոր Սահմանադրությունն է մի ամփոփելով մեր յերկրի սոցիալիստական վերակառուցման վիթխարի հաղթանակները, սոցիալիստական եկոնոմիկայի և սեփականության սոցիալիստական ձևերի հաղթությունը, պարազիտ դասակարգերի վոչընչացումը, դարձել է արդեն կոմունիզմի գործի համար մղվող պայքարի մարտական դրոշը:

Պատմության մեջ այս աննախընթաց խոշորագույն նվաճումները ձեռք են բերվել շնորհիվ այն բանի, վոր մեր յերկրի բանվորներն ու աշխատավորները գնում են լենինյան ուղիով, առաջնորդվում են Լենինի ավանդներով, և նրանց ղեկավարում է մեծ Ստալինը, այդ ավանդների ամենահավատարիմ պահպանողն ու Լենինի գործը շարունակողը:

Կրեմլի կուրսանտների 1924 թ. հունվարի 24-ի յերեկոյին «Լենինի մասին» արտասանած իր անմահ ճառում[1] ընկեր Ստալինը մատնանշում է վորպես Լենինի հանճարի

---

1) Տես «Ագիտատորի բլոկնոտի» այս համարում եջ 34:



ամենավեհ գծերից մեկը՝ նրա հավատը դեպի մասսաները:

Ամենախոր հավատ դեպի մասսաները, դեպի նրանց ստեղծագործ ուժերը, հավատ դեպի այն բանը, վոր շահագործողներից ազատագրված ժողովուրդը կզարգացնի իր ընդունակությունները, կհաղթահարի բոլոր դժվարություններն ու արգելքները և նոր կյանքի ինքնուրույն ստեղծագործման ճանապարհը դուրս կգա,— մասսաների նկատմամբ տածած այս հավատը անմարելի աղբյուրն եր այն առույգ ու պայծառ լավատեսության, վորը միշտ անբաժան եր Լենինից, մինչև իսկ Խորհրդային իշխանության ամենածանր փորձությունների որերին, յերբ դրությունն անհուսալի և անելանելի յեր թվում թշնամիներին, իսկ դրանց հետ մեկտեղ՝ նաև «բարեկամների» բանակին պատկանող նվացողներին:

Յերբ պրոլետարիատն իր ձեռքը վերցրեց պետական իշխանությունը, և յերբ կապիտալիստները՝ նրանց սպասավորող ինտելիգենտական ծառայախմբի հետ մեկտեղ սաբոտաժի ուղիով շրջապատեցին բանվորներին ու գյուղացիներին, նպատակ ունենալով խորացնել փլուզումը և պսակազերծ

անել պրոլետարիատի հեղափոխությունը, Լենինն առաջ քաշեց սոցիալիստական մրցության մեծ գաղափարը, այն մրցության, վորը պետք ե արթնացներ ու շարժողության մեջ դներ ժողովրդական մասսաների ստեղծագործ ուժերը:

Հենց այս մասին լրացավ 19 տարին այն ժամանակից, յերբ Լենինը գրել եր իր «Ինչպես կազմակերպել մրցությունը»[1]) հոդվածը (այդ հոդվածը գրված ե 1918 թվի հունվարի 7–10–ին), բայց նրա բոլոր տողերն այսօրվա կյանքով են շնչում:

«Սոցիալիզմը,— գրել ե Լենինը.—վոչ միայն չի հանգցնում մրցությունը, այլ ընդհակառակը, առաջին անգամ հնարավորություն ե ստեղծում կիրառելու այն իրոք ԼԱՅՆ, իրոք ՄԱՍՍԱՅԱԿԱՆ չափերով, աշխատավորության իրոք մեծամասնությունը ներքաշելու այնպիսի մի աշխատանքի ասպարեզ, վորտեղ նրանք կարող են դրսևորել իրենց, զարգացնել իրենց ընդունակությունները, ի հայտ բերել տաղանդները, վորոնց անսպառ աղբյուր կա ժողովրդի մեջ և վորոնց կապիտալիզմը տրորում

[1]) Լենին. Յերկ. ժող. հ. 22:



եր, ճմլում, խեղդում հազարներով ու միլիոններով»:

Յեվ այնուհետև՝

«Հարյուրամյակներ ուրիշների համար կատարած աշխատանքից, շահագործողների համար կատարած հարկադրական աշխատանքից հետո, առաջին անգամ հնարավոր ե դառնում՝ ԱՇԽԱՏԱՆՔ ԿԱՏԱՐԵԼՈՒ ԻՐ ՀԱՄԱՐ, այն ել կատարելու այնպիսի աշխատանք, վորը հենված ե նորագույն տեխնիկայի և կուլտուրայի բոլոր նվաճումների վրա»:

Լենինի այս խորագույն կանխատեսումն իր ամենացայտուն մարմնավորումը գտավ ստախանովյան շարժման մեջ, վորը հենց ինքն ե նոր տեխնիկայի բազայի վրա ծավալված սոցիալիստական մրցության ամենաբարձր ձևը:

«Ինչպես կազմակերպել մրցությունը» հոդվածը գրելուց հետո, Լենինը գրեց նաև մեկ ուրիշ նշանավոր հոդված՝ «Մեր որերի գլխավոր խնդիրը»[1]): Լենինն այս հոդվա–

[1]) Լենին. Յերկ. ժող. հ. 22:

ծը գրել է 1918 թվի մարտին, և ինչպես մրցության վերաբերյալ հոդվածը, այս հոդվածն էլ տոգորված է նույն անսահման սիրով դեպի հաղթանակած պրոլետարիատի հայրենիքը և անսպառ հավատով դեպի այդ հայրենիքի պայծառ ապագան, այն բանի հավատով, որ ժողովրդական զանգվածները, որոնք բախտն իրենց ձեռքն են վերցրել, ընդունակ են հրաշքներ գործելու և իրոք հրաշքներ են գործում: Լենինն այդ հոդվածը սկսում է մի բնաբանով ( эпиграф ), որը վերցըված է Նեկրասովի «Ո՞վ է Ռուսիայում լավ ապրում» («Кому на Руси жить хорошо») «Դու և՛ աղքատ, դու և՛ առատ, դու և՛ հզոր, դու և՛ անզոր— մայր Ռուսաստան»):

Այդ օրերն յերիտասարդ Խորհրդային յերկրի պատմության մեջ ամենածանր օրերն էին, յերբ գիշատիչ գերմանական իմպերիալիզմը Բրեստի թալանչիական հաշտությունն էր փաթաթում Խորհուրդների հանրապետության վզին:

Ցնցող տողերով Լենինն արտահայտել է այն ամբողջ ամենասուր և ամենատանջալից



ցավը, որով նա ցավել է հայրենիքի բախտի համար:

«Գիշատիչը և՛ ճնշում է, և՛ խեղդում, և՛ ծվատում՝ մաս-մաս է անում Ռուսաստանն այնքան ավելի մեծ կատաղությամբ, վորքան ավելի ահեղ է ծառանում նրա առաջ բանվորական հեղափոխության ուրվականը նրա սեփական յերկրում: Մենք ստիպված ենք ստորագրելու «Տիլզիտյան հաշտություն» *): Ինքնախաբեություններ հարկավոր չեն: Հարկավոր է արիություն ունենալ ուղիղ նայելու դառն ճշմարտության չգեղազարդված յերեսին: Պետք է չափել ամբողջությամբ, մինչև հատակը պարտության, անդամահատման, ստրկացման, վոչնչացման այն ամբողջ անդունդը, վորի մեջ մեզ այժմ իրել են»:

Բայց այդ ծանր ապրումների միջից Լենինի մոտ դուրս է ցայտում նրա լավատեսության, մասսաների նկատմամբ տածած

*) Ծանոթությունը տես էջ 76:

*Նույն անխախտ հավատի կենարար շիթը, այն անդրդվելի համոզմունքը, որ Ռուսաստանը կդադարի աղքատ ու անզոր լինելուց, որ նա կդառնա բառիս լրիվ իմաստով հզոր ու առատ.*

«Նա կարող է այդպիսին դառնալ, վորովհետև մեր ձեռքին այնուամենայնիվ մնացել են բավարար չափով լայնարձակություն ու բնական հարստություններ՝ ոժտելու բոլորին և յուրաքանչյուրին կենսամիջոցների յեթե վոչ առատ, ապա բավարար քանակով: Մեր ձեռքին կա նյութ և՛ հանձին բնական հարստությունների, և՛ հանձին մարդկային ուժերի պաշարի, և՛ հանձին այն սքանչելի թափի, վոր մեծ հեղափոխությունն է հաղորդել ժողովրդական ստեղծագործությանը,— ստեղծելու իրոք հզոր և առատ Ռուսաստան:

Ռուսաստանն այդպիսին կդառնա, յեթե դեն նետի ամեն մի վհատություն և ամեն մի փրազ, յեթե ատամ ատամի սեղմելով՝ հավաքի իր բոլոր ուժերը, յեթե լարի յուրաքանչյուր ներվ, ձիգ տա յուրաքանչյուր մկան, յեթե հասկանա, վոր փրկությունը հնարավոր է



միջազգային հեղափոխության ՄԻԱՅՆ այն ճանապարհին, վորի վրա մենք վոտք ենք դրել: Առաջ գնալ այդ ճանապարհով՝ պարտություններից չվհատվելով, քարը քարի հետևից հավաքել ու դնել սոցիալիստական հասարակության ամուր հիմքը, առանց ձեռքերը ծալելու՝ աշխատել կարգապահություն և ինքնակարգապահություն ստեղծելու, ամենուրեք կազմակերպվածությունը, կարգ ու կանոնը, գործարարությունը, համաժողովրդական ուժերի ներդաշնակ համագործակցությունը մթերքների արտադրության և բաշխման ընդհանրական հաշվառքն ու վերահսկողությունը ամրապնդելու վրա,— այս է ռազմական հզորություն և սոցիալիստական հզորություն ստեղծելու ուղին»:

*Այն ուղին, որ մենք անցել ենք Լենինի կողմից այս տողերը գրելուց հետո, մեծագույն հաղթանակն է մասսաների նկատմամբ տածելիք հավատի, մասսաների հեղափոխական ստեղծագործ հնարավորությունների հավատի, ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթելու հավատի, որի համար վոգեշնչում էր կուսակցությանը՝ Լենինը,*

վորի համար նրան վոգեշնչում էր և վոգեշնչում է Ստալինը։

Այժմ հորդած ստախանովյան շարժումը նախապատրաստել էր կուսակցությունը, նախապատրաստել էր Լենինի և Ստալինի մեծ հոգատարությունը՝ ժողովրդի միջից տաղանդներ դուրս բերելու և աճեցնելու, մասսաների «յերկչոտությունը» հաղթահարելու, նրանց մեջ նախաձեռնության համարձակություն, իրենց ուժերին վստահելու ունակություն դաստիարակելու նկատմամբ։

Անդադրում պայքար մղելով կուսակցության միասնականության ամրապնդման համար, կուսակցության մարտունակության բարձրացման համար, անդադրում հոգ տանելով բանվոր դասակարգի դիկտատուրայի ամրացման համար, բանվորների և գյուղացիների դաշինքը և ԽՍՀ Միության ժողովուրդների յեղբայրական համագործակցությունն ամրապնդելու համար, կուսակցության ու ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինը՝ մոբիլիզացիայի յենթարկելով մասսաները աշխատանքային խանդավառության համար, ապահովել է սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում, կռել ու



կոփել է նրա սոցիալիստական ինդուստրացումը և ռազմական հզորությունը։

Լենինի մահվան տարեդարձի այս օրերին թող յուրաքանչյուր բանվոր ու կոլտնտեսական խորանալով կարդա Լենինի վոգեշունչ տողերը, վոր նա կգտնի վերոհիշյալ՝ «Ինչպես կազմակերպել մրցությունը», «Մեր օրերի գլխավոր խնդիրը» հոդվածներում, վորպեսզի այնքան ավելի ցայտուն կերպով զգա ազատագրված ժողովրդի ուժն ու հզորությունը և դեպի իր ուժերը աճած հավատի ու վստահության նոր հորդումով, լենինյան-ստալինյան կուսակցության և նրա մեծ առաջնորդ Ստալինի ղեկավարությամբ ընթանա դեպի նոր հաղթանակներ, դեպի կոմունիզմի նվաճումը։

Մեր յերկրի միլիոնավոր աշխատավոր մասսաների առաջընթացը դեպի կոմունիստական հասարակարգի հետագա նվաճումներն ապահովված է նրանով, վոր այդ հոծ մասսաներին ղեկավարում է մեր կուսակցությունը, Լենինի-Ստալինի կուսակցությունը, վորը վայելում է աշխատավորների անսահման վստահությունը։ Միմիայն Կոմունիստական Կուսակցության ղեկավարությունն ապահովեց պրոլետարական

հեղափոխության հաղթությունը և բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության կառուցումը։

Մեր յերկրում հաղթանակել են սոցիալիստական կարգերը բոլոր աշխատավորների կողմից սիրված ու հարգված Կոմունիստական Կուսակցության ղեկավարությամբ, մեր բոլորիս սիրելի հանճարեղ Ստալինի գլխավորությամբ, այդ կուսակցության և աշխատավորների վոխերիմ թշնամիների բոլոր վոտնձգությունների ու դիմադրությունները հաղթահարելու, ջախջախելու միջոցով։ Սոցիալիզմի թշնամիների բանակում, հանուն կապիտալիստական կարգերի վերականգնման մեր յերկրում՝ միշտ առաջին դիրքերում են յեղել հակահեղափոխական տրոցկիստները, զինովյեվականներն ու աջ ոպոզիցիայի թափթփուկները։ Պայքար կոմունիզմի այդ թշնամիների դեմ, վորոնք հանդիսանալով ֆաշիզմի գործակալները, միշտ կաշխատեն վնասել սոցիալիստական նվաճումների մեծ գործին, ավելի բարձր պահել հեղափոխական զգոնությունն աշխատավորների շարքերում, գործով և վոչ թե խոսքով հիշել դասակարգային թշնամուն, մաքրել ճանա-



պարհը սոցիալիզմի թշնամիներից, ահա այն լենինյան ավանդներից մեկը, վորի իրագործումով մենք ավելի ու ավելի կմոտեցնենք կոմունիզմի հաղթանակը։

## ԱՆԿԵՏԱ

*Պատգամավորների համար, որը լրացրել է Լենինը ՌԿԿ (բ) 10-րդ համագումարում.*

*Ծննդյան թիվը* — 1870

*Առողջության վիճակը* — Առողջ

*Ի՞նչ լեզուներ գիտեք* — Անգլերեն, գերմաներեն, ֆրանսերեն — վատ. Իտալերեն — շատ վատ:

*Ռուսաստանի ո՞ր վայրերը լավ գիտեք և այնտեղ որքա՞ն եք ապրել* — Գիտեմ Պովոլժյեն, որտեղ ծնվել և ապրել եմ մինչև 17 տարեկան հասակս:

*Համառուսական ո՞ր համագումարին եք մասնակցել* — Բոլորին, բացի 1917 թ. հուլիսի կամ օգոստոսի:

*Եղե՞լ եք արդյոք արտասահմանում* —



— Արևմտյան Եվրոպայի մի շարք երկրներում 1895, 1900, 1905, 1908, 1917 թ. թ.

*Զինվորական պատրաստականություն* — — Ոչ մի:

*Կրթություն* — 1891 թ. ավարտել եմ Պետրոգրադի համալսարանի իրավաբանական ֆակուլտետր (*էքստերն քննություն եմ տվել**):

*Հիմնական զբաղմունքը մինչև* 1917 *թ.* — Գրականագետ:

*Ի՞նչ մասնագիտություն գիտեք* — Ոչ մի:

1917 *թ. հետո ինչո՞վ եք զբաղվել,* — Բացի կուսակցական, պրոֆեսիոնալ, խորհրդային և այլից բացի մասնանշվածներից՝ գրական աշխատանքով:

*Ներկայիս ո՞ր պրոֆմիության եք պատկանում* — ԺՈՒՌՆԱԼԻՍՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆԸ:

*Աշխատանքը* 1917 *թվից* — ԺՈՂԿՈՄԽՈՐՀԻ ՑԵՎ ԱՊԽ-Ի ՆԱԽԱԳԱՀ.

*Ո՞ր ժամանակվանից եք ՌԿԿ անդամ* — — 1894 թ.

*) Ծանոթ. խմբ. — *Արտակարգ կերպով քննություն տալը առանց դասընթացը հաճախելու:*

Պատկանե՞լ եք այլ կուսակցությունների, յեթե այո, ապա վո՞ր — ՎՈՉ։

Մասնակցությունը հեղափոխական շարժման

| ՑԵՐԲ | ՎՈՐՏԵՂ | ՎՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՈՒՄ |
|---|---|---|
| 1892–1893 | ...ՍԱՄԱՐԱ | ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԱՆԼԵԳԱԼ ԽՄԲԱԿՆԵՐՈՒՄ. |
| 1894–1895 | ...ՊԵՏԵՐԲՈՒՐԳՈՒՄ | ԻՍԿ ՌՈՒՍԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԻՑ ՀԵՏՈ — ՆՐԱ ԱՆԴԱՄ |
| 1895–1897 | ԲԱՆՏ | |
| 1898–1900 | ՑԵՆԻՍԵՅԱՆ ՆԱՀԱՆԳ | |
| 1900–1905 | ԱՐՏԱՍԱՀՄԱՆ | |
| 1905–1907 | ՊԵՏԵՐԲՈՒՐԳ | |
| 1908–1917 | ԱՐՏԱՍԱՀՄԱՆ | |

Հեղափոխական գործունեության համար յենթարկվե՞լ եք արդյոք հալածանքների — 1887 թ. ԲԱՆՏԱՐԿՈՒԹՅՈՒՆ, 1895–1897 թ. թ. ԲԱՆՏԱՐԿՈՒԹՅՈՒՆ, 1898–1900 թ. ՍԻԲԻՐ — 1900 — ԲԱՆՏԱՐԿՈՒԹՅՈՒՆ.

Ո՞րքան ժամանակ եք անցկացրել բանտում — ՄԻ ԲԱՆԻ ՈՐ — ՊԼՅՈՒՍ 14 ԱՄԻՍ.

Տաժանակիր աշխատանք և աքսոր — 3 ՏԱՐԻ.

Տարագրության մեջ — 9–10 ՏԱՐԻ։

# ՏԻԼԶԻՏԻ 1807 Թ. ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ

Խաղաղության պայմանագիր՝ մի կողմից Ֆրանսիայի և մյուս կողմից Ռուսաստանի ու Պրուսիայի դաշնակցության միջև՝ 1806 թվականի աշնանը Նապոլեոն I-ի կողմից Պրուսիան ռազմական ջախջախման ենթարկվելուց հետո: Խաղաղության պայմանները մշակեցին Ֆրանսիայի Նապոլեոն I կայսրի և Ռուսաստանի Ալեքսանդր I կայսրի բանակցությունների հետևանքով: Տիլզիտի խաղաղության պայմանագրով Պրուսիան կորցրեց Էլբայից դեպի արևմուտք ընկած իր բոլոր հողերը և իրեն պատկանող լեհական հողերի մի մասը, պարտավորվեց վճարել պատերազմական տուգանք, կրճատել բանակը, փակել իր բոլոր նավահանգիստները անգլիական ապրանքների համար: Ռուսաստանի համար Տիլզիտի պայմանագրի կարևորագույն կետերն էին՝ ֆրանս-ռուսական ռազմական դաշինքի կնքումը և Ռուսաստանի միանալը այսպես կոչված կոնտինենտալ բլոկադին, որով արգելվում էր Անգլիայի հետ



առևտուր անելը: Տիլզիտի խաղաղության պայմանագիրը չափազանց անձեռնտու էր ռուսական ազնվականության համար, որը լայն առևտուր ուներ Անգլիայի հետ և ստանում էր այնտեղից ազնվականության նիստ ու կացի համար անհրաժեշտ տնային իրեր: Ռուսական կառավարությունը, երկյուղ կրելով ազնվականության դժգոհության դրսևորումից, միաժամանակ նույնիսկ թաքցնում էր Տիլզիտի պայմանագրի կետերը: Իսկ ռուսական արդյունաբերական բուրժուազիայի համար Տիլզիտի պայմանագիրը ձեռնտու էր, որովհետև անգլիական ապրանքների ներմուծման արգելումը հեշտացնում էր ռուսական արդյունաբերության զարգացումը, դարձնելով նրան մենաշնորհ՝ ներքին շուկայում: Տիլզիտի խաղաղության պայմանագրից հետո, Ռուսաստանում զգալիորեն ավելացավ ֆաբրիկների ու գործարանների թիվը: Տիլզիտի պայմանագիրը հանդիսացավ Եվրոպայի մայր ցամաքում Նապոլեոնական Ֆրանսիայի ռազմական-քաղաքական գերիշխման գագաթնակետը:

(«Մալայա Սովետսկայա Էնցիկլոպեդիայից»)





ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ „Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։